Սույն համարից սկսած «Հանդեսի» էջերում բացվում է «Պատմա-մշակութային ակնարկներ» բաժինը, որտեղ ընթերցողների լայն շրջանների համար կտպագրվեն գիտա-հանրամատչելի հոդվածներ հայ ժողովրդի պատմության, գրականության, արվեստի հանգուցային հարցերի, ինչպես նաև պատմական, քաղաքական դեմքերի և գիտության ու մշակույթի նշանավոր գործիչների վերաբերյալ:

# ՂԱԶԱՐ ՓԱՐՊԵՑԻ

Պատմ. գիտ. դոկտոր Կ. Ն. ՅՈՒԶԲԱՇՅԱՆ (Լենինգրադ)

*Հայ հին պատմագրության ականավոր ներկայացուցիչ Ղազար Փարպեցին հայտնի է որպես երկու աշխատության հեղինակ։ Մեկը հայոց պատմությունն է, 387 թ. մինչև V դարի վերջը, մյուսը մի նամակ՝ ուղղված մարզպան Վահան Մամիկոնյանին։ Երկուսն էլ գրական մարգարիտներ են. նրանք ապահովել են իրենց հեղինակին պատվավոր տեղերից մեկը հայոց հին մատենագրության պատմության էջերում։ Սակայն Ղազար Փարպեցու անունը անմահացրել են ոչ միայն այդ երկու աշխատությունները. նրա կյանքն ինքնին մեր անցյալի, մեր մշակույթի ու հասարակական զարգացման պատմության մի փայլուն էջ է։ Փարպեցու կերպարը, նրա գրվածքները ասես մարմնավորում են հայոց պատմության ամենից բուռն շրջաններից մեկը։*

*Հին հեղինակների կենսագրությունները սովորաբար անհայտ են մնում, հաճախ նրանց ապրած ժամանակը որոշվում է անուղղակի տվյալներով, իսկ Ղազար Փարպեցու կյանքը մենք գիտենք բավականին մանրամասն։ Նրա կենսագրությունը յուրօրինակ մի մուտք է դեպի V դարի մտավոր մթնոլորտը։ Որոշ չափով մեր պատմիչի կենսագրությունը վերականգնվում է նրա պատմական երկի հիման վրա, սակայն գլխավոր սկզբնաղբյուրը Վահան Մամիկոնյանին ուղղված Թուղթն է։*

*Նամակագրությունը հնում հատուկ գրական տեսակ էր, նրա առանձին նմուշները կան նաև հայոց գրականության մեջ. հատուկ կազմած նամակներ պատմիչները հաճախակի մտցնում էին իրենց երկերի մեջ, վերագրելով դրանք պատմական այս կամ այն դեմքին։ XI դարից մեզ հասել է Գրիգոր Մագիստրոս Պահլավունու նամականին, որը անսպառ աղբյուր է թե՛ քաղաքական, թե՛ մշակութային կյանքն ուսումնասիրելու համար։ Հնում նամակը հաճախակի վեր էր ածվում գրական երկի, որը լայն շրջանառության մեջ էր մտնում։ Նամակը գրվում էր հետևելով որոշ կանոնների. հեղինակը հանդես էր գալիս ոչ միայն որպես կենդանի անձնավորություն, այլև իբրև գրական կերպար։ Երբեմն անձնականը իսպառ բացակայում է։ Ղազար Փարպեցու Թուղթը, իր գրական բարձր արժանիքներով հանդերձ, միաժամանակ շատ մարդկային է. գրական շղարշի տակից պարզ երևում են մեր պատմիչի դիմագծերը, նրա ապրումները հուզում են նաև մեզ, մենք սրտատրոփ հետևում ենք՝ ինչպե՞ս է ընթանում նրա տառապանքներով լի կյանքը, ի՞նչ ճանապարհով է մոտենում նա իր անմահ փառքին։*

*Պատմության մեջ հեղինակը իրեն անվանում է Ղազար Փարպեցի. ասել է՝ Արագածոտն գավառի Փարպի գյուղից է։ Պետք է ենթադրել, որ նա հասարակ ընտանիքի զավակ է եղել, հակառակ դեպքում կպահպաներ տոհմանունը, ինչպես մի շարք ազնվական ծագում ունեցող պատմիչներ՝ Հովհան Մամիկոնյան, Թովմա Արծրունի, Ստեփանոս Օրբելյան։*

*Ենթադրում են, որ Ղազարը ծնվել է 443 թ., գուցե մեկ կամ երկու տարի առաջ. համենայն դեպս Վարդանանց ապստամբության ժամանակ (450—451 թթ.) նա դեռևս մանուկ էր. դժվար է ասել՝ որքան խորն է ապրել ապագա պատմիչը բուռն դեպքերը, ինչ հիշողություն պահպանել նրանց մասին, սակայն ապստամբության վախճանից մի քանի տարի հետո նա գտնվում էր մի*

մթնոլորտում, ուր Վարդանանց պատերազմը, նրա ընթացքը, նրա հետևանքները որոշել էին մարդկանց ճակատագիրը, խառնել նրանց կյանքը, ուստի և դիտվում էին անձնական տեսանկյունից։ Ինչպե՞ս է դա եղել։

Վարդանանց պատերազմի նահատակներից մեկը Հմայակն էր, Վարդան Մամիկոնյանի եղբայրը. նրա երեք որդիները՝ Վահանը, Վասակը և Արտաշեսը ընկել էին Վասակ Սյունու ձեռքը, այնուհետև տարվել Տիզբոն՝ պարսից արքունիք, իբրև պատանդ. տղաներից ավագը՝ Վահանը, մեր հայտնի 482—484 թթ. ապստամբության ապագա հերոսն է, Ղազար Փարպեցու Թղթի հասցեատերը։ 455 թ. Գուգարքի բդեշխ Աշուշային հաջողվում է ազատել երեխաներին և բերել իր մոտ. այստեղ նրանք ապաստան են գտնում իրենց մոր՝ Հմայակի այրի Ձվիկի հետ միասին։ Ինքը Աշուշան այն նախարարներից էր, որոնք ապստամբությունից առաջ կանչվել էին պարսից արքայի մոտ ու այնտեղ առերես ղրադաշտություն ընդունել։ Նախարարները թույլտվություն ստացան վերադառնալ հայրենիք, իսկ Աշուշան մնաց որպես պատանդ և ազատվեց, ըստ երևույթին, տարիներ հետո։ Ձվիկը ծագումով Արծրունի էր, Վասակ Արծրունու դուստրը։ Արծրունիներից ևս շատերը նահատակվեցին պատերազմում։ Դժվար չէ կռահել, ինչպիսի տրամադրություն էր իշխում Աշուշայի տանը, ինչի շուրջ պիտի պտտվեր խոսակցությունը, և ահա այդ գերդաստանի անդամ է դառնում նաև Ղազարը. Թղթում նա իրեն անվանում է Վահան Մամիկոնյանի սննդակից ու խաղակից, Վահանի հետ միասին ստանում է նաև նախնական կրթությունը։ Ասես մանուկ հասակից նա պատրաստ էր շարադրել Վարդանանց ապստամբության անցքերը. և իրոք, հետագայում իր Պատմության երկրորդ դրվագը Փարպեցին ամբողջությամբ նվիրեց Վարդանանց պատերազմին։

Որոշ ժամանակից հետո Ղազարը թողնում է Աշուշայի տունը, սկսում է դասեր առնել Ձվիկի եղբայր Աղան Արծրունուց, նրա ձեռքով էլ դառնում կրոնավոր (ի դեպ, Աղանը ևս անմիջապես մասնակցել էր նախորդ պատերազմին. 449 թ., մյուս հոգևորականների հետ միասին, նա ստորագրել էր Միհրներսեհ հազարապետին ուղղված այն գրությունը, որտեղ հայերը պաշտպանում էին իրենց ազգային կրոնը դարձած քրիստոնեությունը ու հրաժարվում ղրադաշտություն ընդունել)։

Փարպեցու կյանքում մի նոր շրջան է սկսվում, երբ հնարավորություն է առաջանում մի քանի տարով գնալ «հոռոմների» մոտ, այսինքն Բյուզանդական կայսրություն։ Այստեղ նա սովորում է հունարեն, ընթերցում հայրաբանական գրականություն, որը կազմում էր իրեն ժամանակակից աստվածաբանության հիմքը, միաժամանակ պարունակում հանրագիտական, փիլիսոփայական, բարոյագիտական, գեղագիտական, տնտեսագիտական գաղափարներ։ Բայց հունարենը ճանապարհ է պարզում ոչ միայն դեպի քրիստոնեական գիտելիքները. կամա-ակամա Ղազարը պիտի հաղորդակից դառնար նաև անտիկ, հեթանոս մշակույթին, որի ավանդույթները դեռևս ողջ ու շոշափելի էին հոռոմների երկրում։ Հին աշխարհի մնացորդները շրջապատում էին մարդուն ամեն քայլափոխում, էլ չենք ասում, որ քրիստոնեական մշակույթը բառիս լայն իմաստով շատ բան էր ժառանգել ու յուրացրել անտիկ մշակույթից, հեթանոս գաղափարներից։

Ղազար Փարպեցին ամենաբարձր կարծիքի է հունական գիտության մասին։ Նա երբեք առիթը չի կորցնում ընդգծել այս կամ այն անձնավորության հմտությունը հունաբանության ասպարեզում. խոսում է Գյուտի կաթողիկոսության մասին և ի միջի այլոց նկատում, որ «էր նա այր լի գիտութեամբ հայով և առաւելեայ յունիւն»։ Երիտասարդ տարիներին Մաշտոցը սովորել էր հունարեն, պնդում է նա, հենվելով Մաշտոցի կենսագիր Կորյունին, նշանագրերը ստեղծողը լավ գիտեր հունարեն, սակայն երբ կարիք առաջացավ թարգմանելու Սուրբ Գիրքը և Մաշտոցն ու իր շրջապատը հանդիպեցին դժվարությունների, ապա դիմեցին Սահակ Պարթևին։ Որքան էլ պաշտի Ղազարը Մաշտոցին, մեր հեղինակի ուշադրության կենտրոնում է Սահակը, կատարյալ ամեն ինչում, հատկապես հունագիտության մեջ։

Իր մասին պատմիչը համեստ է արտահայտվում՝ հնարավորությունների սահմաններում սովորել է հունարեն, տկարամտությունը հաղթելու համար կարդացել գրքեր. բայց արդեն գրքերի պատկառելի ցանկը, որը նա բերում է իր Թղթում, ցույց է տալիս, որ նա վարժ հունագետ է եղել։ Ի դեպ, ինչպես ճիշտ նկատել է Մանուկ Աբեղյանը, Ղազար Փարպեցին առաջին հեղինակներից է, որոնք սկսել էին հայերեն նոր բառեր ձևել հունարեն բառերի վրա, հարստացնելով մեր լեզվի բառապաշարը, հնարավոր դարձնելով ամենաբարդ, ամենից նուրբ հասկացությունների թարգմանությունը։

Նոր գիտելիքներով զինված՝ Ղազարը վերադառնում է Հայաստան։ Կամսարականների հետ լինելով, մասնակցում է նաև 482—484 թթ. պատերազմին սասանյան իշխանության դեմ, իսկ երբ ապստամբության ղեկավար Վահան Մամիկոնյանը ընդունում է հաշտության պայմանները՝ որոշում է նվիրվել ճգնության. հոգևորականի համար դա սովորական քայլ էր։ Քաշվում է Սյունիք, մնում է այնտեղ 2 տարի, ձմեռն անց է կացնում քարայրում, Մովսես կրոնավորի մոտ, իսկ ամառը նրան իր մոտ է տանում Սյունիքի եպիսկոպոս Մուշեն։ Այստեղ էլ նրան շուրջ 486 թ. գտնում է մարզպան դարձած Վահան Մամիկոնյանը, տեղափոխում Վաղարշապատ և նշանակում Կաթողիկե եկեղեցու վանքի վանահայր։

Այն ժամանակվա Կաթողիկե եկեղեցին վատ վիճակում էր գտնվում. 484 թ. Վահան Մամիկոնյանը նորոգում է «իր նախնիների հնացյալ կառույցվածքը», սակայն Ղազարի օրոք ևս անհաստատ շինվածքը մի քանի անգամ վնասվում է (ըստ հետին տեղեկության, Փարպեցու թշնամիները շենքը կրակի են տվել)։ Այնուամենայնիվ նա ջանք չի խնայում կաթողիկե եկեղեցին ու վանքը բարվոք վիճակում պահելու. առատ նվիրաբերությունների շնորհիվ վանքը պայծառանում է։ Շատերի կողմից Ղազարը սեր ու հարգանք է վայելում, նրա գիտելիքները ճանաչում են գտնում, բայց միաժամանակ աճում է նաև թշնամիների նախանձը։ Բաբկեն կաթողիկոսը, որին դիմում է նա, այդ հարցում ձեռնպահ է մնում։ Մամիկոնյանների հովանավորությունը չի փրկում նրան, հուսահատ լքում է հայրենիքը և տեղափոխվում Միջագետքի Ամիդ քաղաքը, այժմյան Դիարբեքիրը։ Ամիդից Փարպեցին Վահան Մամիկոնյանին է ուղղում իր Թուղթը. մարզպանը կրկին կանչում է նրան իր մոտ ու հանձնարարում գրել Հայոց պատմություն։

Իր գլխին թափվող չարիքների պատճառը Ղազարը համարում է նախանձը, որը բխում է ստախոս աբեղաներից։ Պետք է ընդգծել, որ Թղթում, ինչպես նաև մի շարք այլ բնագրերում «նախանձ» բառը չի նշանակում սոսկ ախտություն, սրտնեղություն, չար զգացմունք, որ մարդ ունենում է տեսնելով մյուսի բարվոք վիճակը, որից ինքը զուրկ է (նման կերպով մեկնաբանել է այդ հասկացությունը դեռևս Արիստոտելը). Նախանձն այստեղ ոչ միայն սրտնեղություն է, այլև չարություն, ոխակալություն, որը դրդում է նախանձողին դիմել ամենաստոր քայլերի։

Մանուկ Աբեղյանը, որը մանրամասն վերլուծել է Թուղթը, ցույց է տալիս, որ աբեղաների նախանձը առաջացել է ոչ թե անձնական, այլ հասարակական հողի վրա. նա իրավացիորեն մերժում է այն տեսակետը, որ իբր Ղազար Փարպեցու հակառակորդները պատկանել են ասորական հոսանքին. իրոք, այդ շրջանում ասորական ուղղափառ, ոչ նեստորական եկեղեցին արդեն զրկվել էր Հայաստանում իր դիրքերից։ Մ. Աբեղյանը առաջ է քաշում իր տեսակետը՝ բախումը տեղի էր ունենում երկու կողմնորոշումների միջև՝ պարսկական և ազգային հայկական։ Հունասերների և նրանց հակառակորդների ընդհարումը, որն սկիզբ է առնում Մաշտոցի ու Սահակի օրոք, V դարի երկրորդ կեսին իբր վեր է ածվում «հունական գիտության սիրող ազգայինների ու պարսկասերների» կռվի։ Որ Ղազարի կողմից հիշատակված «հունասերները» իրոք «ազգային» են եղել՝ դա փաստ է. հակառակ դեպքում պիտի ենթադրենք, որ Փարպեցու պես հայրենասեր գրողը կարող է դրվատել նրանց լոկ գիտելիքների համար։ Մյուս կողմից, ամենակծու արտահայտություններն օգտագործելով իր հակառակորդների մասին խոսելիս, Թղթի հեղինակը երբեք չի մե-

ղադրում նրանց կարծեցյալ «պարսկասիրության» մեջ։ Հայրենասեր կարող է լինել նաև տգետը. ուրիշ բան է, թե ինչ օգուտ է բերում տգետ հայրենասիրությունը։

V դարում հայ մշակույթը ապրում է աննախընթաց վերելք. գլուխ է բարձրացնում նորածնունդ հայ մտավորականությունը, այն, որ ոչ միայն խոսում, այլև գրում ու կարդում էր հայերեն։ Միաժամանակ նա հաղորդակից էր եղել նաև «հունական» գիտությանը, դրա շնորհիվ անսահման լայնացրել մտահորիզոնը։ Այդպիսին էր Մաշտոցի ու Սահակի շրջապատը, այդպիսին էր ինքը՝ Ղազար Փարպեցին։ Կարելի է կռահել, որ այդպիսին են եղել նրա կողմից հիշատակված Մովսես «փիլիսոփոսը», Խոսրովիկ Թարգմանիչը և մյուսները (որոնք ևս «նախանձի» զոհ գնացին)։ Հոգևորականության մեջ մտավոր հողի վրա շերտավորում էր առաջացել։ Դժվար չէ պատկերացնել՝ ինչպես պիտի տրամադրված լինեին Ղազար Փարպեցու պես գիտուն մարդու նկատմամբ տգետ աբեղաները։ Էլ չենք ասում, որ Կաթողիկե եկեղեցու վանքի առաջնորդի պաշտոնը շատ բարձր է դասվել, կապված է եղել բազմաթիվ արտոնությունների և եկամտի հետ և այն հանգամանքը, որ Ղազարն է գրավում այդ պաշտոնը, ինքնին պիտի նախանձ արթնացներ։ Բացի այդ, նրա հասակն էլ չէր համապատասխանում այդ պաշտոնին. դա էլ էր զայրույթի առիթ տրամադրում թշնամիներին՝ «մանուկ մի հոգաբարձ տեղույն չկարէ առնել», բողոքում էին նրանք։ Ղազարին տապալելու համար ինչ մեղք ասես չէին փաթաթում նրա վզին. աղանդավոր է, պոռնկությունը մեղք չի համարում, վանքում հովանավորում է պիղծ ու չարագործ մարդկանց, յուրացնում է վանքի եկամուտն ու նվիրաբերությունները. առաջ, ասում էին, նա իրոք գիտնաբար է խոսել, այժմ՝ անգիտաբար, եկեղեցում Սուրբ Գրքի հատվածները անսայթաք է կարդում... Անգերազանց ճարտասան, Ղազարը վարպետորեն ջրում է այդ ամբաստանությունները, ընթերցողի աչքում մերկացնելով իր հակառակորդներին։ Հալածված լինելով՝ նա բարոյական մեծ հաղթանակ է տանում ուժ առած տգետների վրա, բայց դա չէ ամենից կարևորը։

Ընդհանուր, ինչպես նաև հայոց պատմությունից գիտենք բազմաթիվ դեպքեր, երբ լուսավոր անձինք հալածանքի են ենթարկվում իրենց գիտելիքների համար։ Փարպեցու կյանքն այդ տխուր օրինաչափության նմուշներից մեկն է։ Առավել կարևորն այստեղ այն է, որ նա ոչ միայն հաղթանակ է տանում իր հակառակորդների նկատմամբ, այլև պաշտպանում է մարդկային արժանապատվության գաղափարը։ Քրիստոնեական բարոյագիտության մեջ մեծ տեղ է գրավում այն դրույթը, որ մարդս ոչնչություն է, պիտի խոնարհվի աստծու առջև ու անընդհատ նվաստացնի իրեն։ Իր դարաշրջանի հավատարիմ զավակ, քրիստոնեական գաղափարի ջատագով ու պաշտպան Ղազարն անշուշտ ենթարկվում է այդ կտրուկ պահանջին։ Տարիներ հետո ձեռնամուխ լինելով «Հայոց պատմությանը», նա առաջաբանում նշել է, որ հանձն առավ այդ գործը՝ զիջելով Վահան Մամիկոնյանին, վերջինս բռնադատեց հեղինակի «տկարությունը», ստիպեց նրան անցնել մի գործի, որը նրա գիտությունից վեր է... Մեր մատենագրության մեջ պահպանվել է նվաստացուցիչ մակդիրների մի ամբողջ շարան. հետևելով դարաշրջանի բարոյական թելադրանքին, մատենագիրներն ու ձեռագիր մատյանների գրիչներն ու ծաղկողներն անվանում են իրենց «տրուպ», «ստոր», «անպիտան», «չնչին» և այլն, և այլն, մինչդեռ իրականում այդ «անպիտան» ու «անարհեստները» կարող են լինել ականավոր գրողներ ու նկարիչներ[1]։ Ենթարկվելով ժամանակի թելադրանքին, հետևելով հատուկ գրական էտիկետի, Ղազար Փարպեցին այս հարցում ոչնչով չի դրսևորում իր խառնվածքի յուրահատկությունը։ Բայց իր ոչնչության մասին խոսում է ի միջի այլոց, և միաժամանակ առաջին իսկ էջերից բարձրաձայն հայտարարություն

1 Երբեմն ասում են, որ նման ածականներն իբր վկայում են մարդկանց համեստության մասին. ասել այդպես՝ նշանակում է բոլորովին չըմբռնել քրիստոնյա միջնադարի ոգին։

է անում իր արժանիքների մասին։ Հիշեցնում է, որ այդպիսի վարմունքը մեղք չէ, անգամ Պողոս Առաքյալը, խախտելով կարծես Քրիստոսի կանոնները, թվարկել է իր բարի հատկությունները և արարքները, և դա չի խանգարել նրան շարունակել իր առաքելական ծառայությունը։ Եթե Ղազարը, ինչպես ինքն է ասում, «անզգամ» է, ապա նա հետևում է Պողոսի օրինակին, և թող Վահանը ընդունի նրան որպես «անզգամի»։

Այնուհետև թղթի հեղինակը համառոտ կերպով նկարագրում է իր կյանքը, սկսած մանկությունից, շարունակ ընդգծելով, որ նա այսպես թե այնպես հավասար է Հայոց մարզպան Վահան Մամիկոնյանին։ Դիմում է մարզպանին այն Ղազարը, որին և՛ հասցեատերը, և՛ մյուսները իր գիտելիքների շնորհիվ համարել են անփոխարինելի՝ «որում ոչ գոյ փոխանակ»։ Այժմ, երբ նախանձի հետևանքով ինքը հալածանքի է ենթարկվում, շատերը կցանկանային նրա տեղը գրավել, բայց արդյո՞ք ի վիճակի են։

Դու գտար ինձ Սյունիքում ու բերիր քո տունը, հիշեցնում է նա մարզպանին, ո՛չ իբրև աղքատ, ո՛չ էլ իբրև որևէ մեկի ծառա՝ մենք, կրոնավորներս, ազատ ենք Քրիստոսի անունով։ Ես կրոնավոր եմ դարձել քո քեռու՝ տեր Աղանի միջոցով, ուրեմն, եզրակացնում է Ղազարը, այս առումով ես հավասար եմ քեզ։ Այնուհետև նա հիշեցնում է իր ու Վահանի մանկության տարիները։ Ճիշտ է, Վահանի սննդակիցն ու խաղակիցը լինելով խաղի ժամանակ կրել է ապագա մարզպանի հազուսար, բայց չէ որ Զվիկը և նրա քույրը՝ Անուշ-Վռամը, սնուցել են Ղազարին Վահանի հետ հավասար. ուրեմն այստեղ ևս Փարպեցին իրեն հավասարեցնում է Վահան Մամիկոնյանին։ Եվ նա արժանի է այդպիսի հավասարության. չէ՞ որ նա առավել շնորհների տեր է։

Այդ շնորհները նրա գիտելիքներն են. երբ պատվավոր մեկը ցավում է, որ Ղազարին վանել են, որ անիրավացի է եղել այդ քայլը, Ղազարը եկեղեցու զարդն է, ապա նրան պատասխան են տալիս՝ առաջներում նա իրոք մեծ գիտության տեր էր, սակայն հիմա այլևս համեղ ու զորավոր խոսքեր չի արտասանում, վատ է խոսում։ Հակառակորդները, կարծես, պայմանավորվել էին՝ պնդելով, թե Ղազարի արժանիքները չքացել են. որքան անարդարացի են եղել այդ խոսքերը, կարելի է դատել ելնելով թեկուզ Փարպեցու Պատմությունից, որը գրվել է Թղթից հետո։ Լինելով մեծ մտքի տեր, պատմիչը զգացել է իր մեծությունը, գիտակցել, թե որքան բարձր է նա շրջակայքի հոգևորականներից։ Նրան ստիպում են լքել վանքը, թողնելով այնտեղ իր ամբողջ ունեցվածքը՝ «անգամ հռոմ (այսինքն՝ հունարեն) գրքերը ինձ չտվին, այժմ այնտեղ վայր են ընկած, դառնալով ցեցի կերակուր»։ Այս դիտողությունը կենսագրական փաստ է. մատենագիրը պարզ կերպով ցույց է տալիս, որ նրա ձեռքին գրքերը երբեք ցեցի կերակուր չէին լինի, շատ-շատ կմաշվեին անընդհատ կարդալուց։

Արդեն ասացինք, որ Ղազար Փարպեցու Թուղթը բացառիկ տեղ է գրավում Հայ գրականության պատմության մեջ, նա ծանոթացնում է մեզ V դարի մտավորականի հոգեկան աշխարհին, ցույց է տալիս, թե որքան բարդ ու հարուստ է եղել այդ աշխարհը և ինչպիսի ուժով է արտահայտվել գրական երկում։

Պատահական չէ, որ Ղազար Փարպեցու Թուղթը գրավել է Միքայել Նալբանդյանի առանձնակի ուշադրությունը։ 1862 թ. նա Պետերբուրգի Պետրոպավլովյան բերդի խոնավ մի խուցում, ասես փարատելով իր ցավերը, աշխարհաբարի է թարգմանել ու ծանոթագրել այդ Թուղթը[2]։

* * *

Վաղ քրիստոնեական մշակույթը ընդհանրապես չի ճանաչել «գեղեցիկ գրականության» գաղափարը, ձգտումը դեպի գեղարվեստականը, կամ՝ ավելի ցածր մակարդակի վրա՝ դեպի զվարճալին, մարդիկ բավարարում էին դիմելով

2 Ղազար Փարպեցու Թուղթը՝ Մեղադրության ստախոս աբեղաներին. Թարգմանություն և բացատրություն Մ. Նալբանդյանց. Ս. Պետերբուրգ, 1868=ՌՅԺԷ։

որական մյուս տեսակներին։ Եթե մի կողմ թողնենք բանահյուսությունը, ապա գեղեցիկ գրականության դեր կարող էին կատարել Հին ու Նոր Կտակարանը, սրբերի վարքերը (կենսագրությունները), որոշ չափով նաև պատմագրությունը։ Իհարկե, չոր ու ցամաք տարեգրությունները, որտեղ արձանագրված է լինում սոսկ փաստը, եղելությունը՝ դժվար թե գոհացնեին ընթերցողի տենչը դեպի գեղեցիկը. սակայն պատմական շարադրանքը հաճախակի մոտենում է գեղեցիկ գրականությանը, նմանվելով նրան առնվազն երկու հատկությամբ. այստեղ ևս հեղինակը դիմում է ընթերցողի զգացմունքներին և հաճախակի գործում է ոչ թե պատկերների, այլ գեղարվեստական կերպարների միջոցով, ընդ որում հեղինակը ստեղծում է ոչ միայն առանձին հերոսների (այդ թվում նաև իր՝ գրողի) կերպարները, այլև ողջ հասարակության համայնապատկերը։ Գեղարվեստականությունը, սակայն, այստեղ ինքնանպատակ չէ, նա ծառայում է պատմական երկի խրատականությանը, ուսանելիությանը։

Շարադրելով անցյալի դեպքերը, պատմագիրը երբեմն անգիտակցաբար, իսկ շատ անգամ՝ գիտակցորեն արտահայտում է իր վերաբերմունքը նրանց նկատմամբ։ Պատմական անցյալի դեպքերը միշտ ինչ-որ զուգորդում են առաջացնում ներկայում։ Վերաբերմունքը դեպի անցյալը միշտ այս կամ այն չափով նկատի ունի ներկան, ահա այս կերպ է արտահայտվում անցյալի մասին գրող հեղինակի գնահատականը, որը տրվում է ներկային, այս կերպ է իրականացվում պատմագրության խրատական նպատակը։

Պատմագրությունը մեզանում առաջանում է գրի ստեղծումից անմիջապես հետո, իբրև քրիստոնեական մշակույթի բաղադրիչներից մեկը։

Աստվածաշունչը ինքնին պարունակում է շատ հատվածներ, որոնք պատմագրական բնույթ ունեն։ Հույն պատմիչ Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմությունը» հայերեն առաջին թարգմանածո գրքերից է։ Սակայն ասածս նկատի ունի այն ընդհանուր պայմանները, այն ընդհանուր հողը, որի վրա պիտի աճեր հայ հին պատմագիտությունը. հայերի պատմական զարգացման առանձնահատկությունները տվյալ ասպարեզում ևս ապահովեցին ինքնուրույն երանգ։

Այն պայքարը, որը մղում էին հայերը IV—V դդ. Սասանյան պետության դեմ, չի կարելի դիտել որպես դիմադրություն՝ միայն քաղաքական ճնշումից փրկվելու համար։ Պարսից արքունիքը ճիգ էր անում կրոնափոխ անել հայերին, մինչդեռ քրիստոնեությունը արդեն խոր արմատներ էր ձգել երկրում, դարձել ազգային ինքնագիտակցության բաղադրյալը, քրիստոնեությունը դավանանք լինելուց բացի ինչ-որ չափով նաև ազգային պատկանելության խորհրդանիշ էր։ Քրիստոնեությունը ենթադրում էր հատուկ մշակույթ, հատուկ, պարսկականից տարբերվող կենցաղ. նահանջել արքունիքի պահանջների առջև կնշանակեր կորցնել ազգային դեմքը, ազգային կերպարը, կորցնել այն հատկանիշները, որոնք կազմում էին հայ լինելու գաղափարը։ Պարզ է, որ այն պայքարը, որը ծավալում էին հայերը պարսից նվաճողական ձգտումների դեմ, պիտի խորացներ ազգային ինքնագիտակցությունը (որը գրային շրջանում հասել էր բարձր մակարդակի, գրի ու դրականության ստեղծումն ինքնին այդ գիտակցության ծնունդ էր)։ Իսկ ինչպե՞ս պիտի արտահայտվեր ազգային գիտակցությունը հայ հասարակության զարգացման վրա այդ շրջանում. իհարկե, ժողովրդի պատմական անցյալը ճանաչելու, արժեքավորելու միջոցով։ Հարկավոր էր գտնել մաքառող ժողովրդի արմատները, պարզել, ի՛նչ ուղիով է նա մոտեցել իր ներկա վիճակին ու դիրքին։ Այդ հարցերի պատասխանը տրամադրելու էր կոչված պատմությունը, որը նկարագրում է կյանքն իր զարգացման մեջ, ուստի ակամայից որոնում ու գտնում է ներկայի հեռավոր կամ անմիջական անցյալը։ Ղազար Փարպեցու երկը (ինչպես և մեր մյուս պատմիչների աշխատությունները) խոսում է ներկայի մասին՝ հուզող հարցերի պատասխանը որոնելով նաև անցյալում։

Ե՞րբ է սկսվում հայերի պատմական կյանքը, ի՞նչ շրջաններ է նա անցել ըստ մեր հեղինակի։ Փարպեցին նշում է, որ հայոց ՚պատմության առաջին գիրքը գրել է Ագաթանգեղոսը, այստեղ խոսվում է հայերի դարձի մասին դեպի

քրիստոնեություն Գրիգոր Լուսավորչի միջոցով։ Երկրորդ գիրքը շարադրել է Փավստոս Բուզանդացին. այդ աշխատության բովանդակությունն է՝ Հայաստանի անցքերը դարձից մինչև երկրի բաժանումը Սասանյան պետության ու Բյուզանդական կայսրության միջև (այսինքն, մինչև 387 թ.)։ Ինքը երրորդ պատմության հեղինակն է, նկարագրում է բաժանումից հետո տեղի ունեցած դեպքերը մինչև Վահան Մամիկոնյանի մարզպանությունը, այսինքն 486 թ.։ Ինչպես տեսնում ենք, Ղազար Փարպեցին ներկայացնում է մեր հին պատմագրության առաջին պարբերացումը, որը միաժամանակ նաև բուն պատմության պարբերացում է։ Այստեղից պարզ երևում է, որ հայերի բուն պատմությունը Ղազարի աչքում սկսվում է դարձից, պատմական ընթացքը, ինչպես ցույց է տալիս նրա շարադրանքը՝ քրիստոնյա ու հեթանոս (ավելի կոնկրետ՝ զրադաշտական) աշխարհների բախում է, համենայն դեպս ազգային պատմությունը դիտվում է նախ և առաջ այդ տեսանկյունից։ Նման մոտեցումը հասկանալի է. արդեն ասացինք, որ պաշտպանելով քրիստոնեությունը պարսից զրադաշտության էքսպանսիայի դեմ, հայերը պաշտպանում էին իրենց էությունը, այն կերպարը, որն ընդունել էին պատմական զարգացման ընթացքում։ Բայց դա հարցի մի կողմն է միայն. ընդհանուր առմամբ, քրիստոնեությունը այդ շրջանում խորհրդանիշ էր դարձել նաև զուտ աշխարհիկ, զուտ քաղաքական գաղափարներ արտահայտելու համար։ Պարզ է, որ պատմությունը Փարպեցու մոտ սկսված է դարձից ու նրան անմիջապես առնչվող դեպքերից (նման մտայնությունը կարողացավ ճեղքել միայն Մովսես Խորենացու պես հանճարը, նա ստեղծեց իրոք Հայոց պատմություն, սկսելով Հայկ նահապետից, այսինքն դիտելով նախաքրիստոնեական Հայաստանի անցքերը որպես ազգային պատմության լիիրավ դրվագ)։

Ղազար Փարպեցու «Հայոց պատմությունը» բաղկացած է առաջաբանից ու երեք մասից. նա շարադրում է պատմական անցքերը՝ հետևելով ժամանակագրական կարգին, ընտրելով իհարկե այն դեպքերը, որոնք նրան հույժ կարևոր են թվում։ Հետևենք մեր պատմիչի շարադրանքին։

Պարսից արքան ու հունաց թագավորը բաժանել են Հայաստանը երկուսի. մեծն ու լավագույնը բաժին է հասել պարսիկներին. այդ մասի նախարարները իրենց համար թագավոր են խնդրում, և պարսից արքա Շապուհը Հայաստան է ուղարկում Խոսրով Արշակունուն։ Իսկ Պապ թագավորի որդի Արշակը, որը մինչև բաժանումը տիրում էր ողջ Հայաստանին, երկար մտածմունքից հետո որոշում է ապաստան որոնել հունաց մասում, այստեղ նա գոնե ապատ կլինի «անօրենների» անարգությունից, և նա տեղափոխվում է բյուզանդական մաս։ Վիպասանի ոճով Փարպեցին շարադրում է այդ դեպքերը. վերարտադրում Արշակի մտորումները, որը դեռևս վճռական քայլին դիմելուց առաջ հայրենատենչության մոլուցք է ունենում, և մեր հեղինակը, ասես իր վրա վերցնելով թագավորի ապրումները, տալիս է իր ծննդավայր Այրարատ գավառի հուզիչ նկարագրությունը։

Գաղթի դեպքերը շարադրելուց հետո նա ամբողջությամբ կենտրոնանում է արևելյան հատվածի վրա, այստեղ է գտնվում Արշակունիների ոստանը (Այրարատում, որն ըստ Փարպեցու «է գլուխ աշխարհիս Հայոց»), այստեղ է մայրաքաղաքը՝ Վաղարշապատ կամ Նոր քաղաքը, այստեղ է Կաթողիկե եկեղեցին։ Մինչդեռ այս հատվածում կրքեր են բորբոքվում, նախարարները հրաժարվում են ենթարկվել Խոսրովին ու նոր թագավոր են պահանջում։ Պարսից արքան ընդառաջում է նրանց, Խոսրովի թագը դնելով նրա եղբայր Վռամշապուհի գլխին։ Վռամշապուհի օրոք է տեղի ունենում հայ գրերի գյուտը։

Մաշտոցի մասին խոսելիս Ղազարը հետևում է վերջինիս վարքին, որը գրել էր մեծ վարդապետի աշակերտ Կորյունը։ Մաշտոցը ծնվել է Տարոն գավառի Հացեկաց գյուղում, մանկությունից սովորել է հունարեն, դարձել զինվորական դպիր, ծառայելով Խոսրով թագավորի արքունիքում։ Տեսնելով, թե ինչ դժվարություններ են կրում հայ հոգևորականները ասորերեն ու հունարեն սովորելիս (հայտնի է, որ հայ գրերի բացակայության պատճառով օգտվում

էին հունարեն, ասորերեն ու պարսից գրերից), Մաշտոցը դիմում է Սահակ կաթողիկոսին, որը և քաջալերում է նրան՝ որպեսզի նա ձեռնամուխ լինի հայերեն տառերի ստեղծմանը։ Կաթողիկոսը և Մաշտոցը գնում են թագավորի մոտ, թագավորը հիշում է, որ նրան արդեն ասած են եղել այդ գործի մասին, կարգադրում է մարդ ուղարկել Դանիել ասորի եպիսկոպոսի մոտ, որի մոտ կան հայ նշանագրեր։ Նշանագրերը բերում են, Մաշտոցը սկսում է սովորեցնել. պարզվում է, որ այդ նշանագրերը անբավարար են. Հարկավոր էր ստեղծել հայերենի հնչյունական համակարգին համապատասխանող այբուբեն։ Մաշտոցը գործի է անցնում և երկար մտորումներից հետո ստեղծում հայոց այբուբենը։

Կորյունի համեմատությամբ, Փարպեցու պատմածը համառոտ է, այն չի կարելի դիտել որպես վերաշարադրանք։ Նա բաց է թողնում բազմաթիվ փաստեր, պատմությունը երբեմն դառնում է անկապ. այսպես, հայտնի է, որ Դանիելյան նշանագրերը անհարմար էին հայերենի առանձնահատկությունները արտահայտելու համար, որոշ ժամանակից հետո, հուսահատ վիճակում, Մաշտոցը հրաժարվում է նրանցից և ստեղծում այն գրերը, որոնցից մենք օգտվում ենք մինչև օրս. այդ փաստը Ղազարը շրջանցում է լռելյայն։ Ամենայն հավանականությամբ, Կորյունի փոքրիկ գրվածքը լայն տարածում էր ստացել, և մեր պատմիչը բավարարվել էր նրանով միայն, որ հիշեցնի ընթերցողին հանրահայտ համարվող դեպքերը։ Բայց որքան էլ համառոտված լինի նրա շարադրանքը, այստեղ աչքի է ընկնում մի հետաքրքիր միտում. ըստ պատշաճի մեծարելով Մաշտոցին, նրա կողքին մեր հեղինակը մեծ դեր է վերագրում Սահակ կաթողիկոսին։ Ընդգծելով Սահակի գիտելիքները, նրա հելլենագիտությունը, շեշտելով կաթողիկոսի ծառայությունն ուսման տարածման բնագավառում, Փարպեցին նրան երկայացնում է որպես V դարի մշակութային վերելքի առաջնորդ։ Սահակ Պարթևի այսպիսի մեծարման պատճառներից մեկն էլ այն է, որ Ղազարի Պատմությունը մի գովք է Մամիկոնյան նախարարական տոհմին, իսկ այդ տոհմի ծննդաբանությունը կապված է եղել Սահակ Կաթողիկոսի հետ։ Փարպեցու Պատմության երկրորդ գրքի գլխավոր հերոսի՝ Վարդան Մամիկոնյանի մայրը Սահակի դուստրն է։ Վահան Մամիկոնյանը (նրան ուղղված է Թուղթը, նա Պատմության երրորդ մասի կենտրոնական անձնավորությունն է, նրա պատվերով է գրված ողջ Պատմությունը) Վարդանի եղբորորդին է։ Բնական է, որ գովաբանելով Սահակին, պատմիչը համապատասխան տրամադրություն էր առթնացնելու նաև նրա հետնորդների նկատմամբ։ Սահակը փայլ է հաղորդում Մամիկոնյաններին ոչ միայն իր անձնավորությամբ։ Նա եղել է հռչակավոր կաթողիկոս Ներսես Մեծի որդին. լուսավորչական, ինչպես նաև քաղաքական ասպարեզում հայրը եղել է նույնպիսի խոշոր դեմք, ինչ և որդին։ Ավելին. Ներսեսի պապը եղել է Հուսիկ կաթողիկոսը, որը ճանաչվել է որպես Գրիգոր Լուսավորչի թոռը[3]։ Ահա թե ինչ զուգորդում պիտի առաջանար ընթերցողի մոտ Սահակին նվիրված էջերն ընթեռնելիս։ Սահակը շարունակում է մնալ նաև հաջորդ էջերի գլխավոր անձնավորությունը։

Վախճանվում է Վռամշապուհ թագավորը, կրկին անգամ գահ է բարձրանում նրա եղբայր Խոսրովը։ Խոսրովին փոխարինում է Շապուհը՝ Սասանյան հարստության կրտսեր անդամներից, բայց շուտով հայոց թագն անցնում է Վռամշապուհի որդի Արտաշեսին։ Արտաշեսը անառակ կյանք է վարում, նախարարները ըմբոստանում են նրա դեմ, փորձում են իրենց կողմը քաշել նաև Սահակին, բայց կաթողիկոսը կտրականապես մերժում է՝ Արտաշեսը մեղավոր է, բայց սուրբ ավազանում է մկրտված, ուստի մեր եղբայրը, մեր մարմինն է։ Նախարարները բողոքում են պարսից արքայի առջև, նա կանչում է թագավորին և կաթողիկոսին իր մոտ, Սահակը այստեղ ևս հրաժարվում է չարախոսել հայոց թագավորին։ Արտաշեսը զրկվում է գահից, թագավորական իշխանությունը Հա-

---

3 Սահակ կաթողիկոսի Պարթև տոհմանունը գալիս է Գրիգոր Լուսավորչից։

յաստանում առհասարակ վերանում է, երկիրն այնուհետև ենթարկվում պարսիկ մարզպանի։ Սահակը ևս հեռացվում է հովվությունից, քահանայապետությունը անցնում է ոմն Սուրմակ Երեցին, այնուհետև՝ Պարսկաստանից եկած ասորիներին (Արշակունիները դադարում են իշխել Հայաստանի արևելյան մասում 428 թ.)։ Միաժամանակ հետո նախարարները ողջում են իրենց վարմունքի համար, աղաչում են, որպեսզի Սահակը նորից ստանձնի քահանայապետությունը, բայց նա հրաժարվում է, նա ի վիճակի չէ լինել «տիրանենգ, տիրադավան, մատնիչ»։ Ժողովրդի հովիվը ցանկանում է մեկուսանալ, ողբալ Հայոց աշխարհի կորուստը։ Պարզվում է, որ դեռևս եպիսկոպոս ձեռնադրվելուց առաջ Սահակին տեսիլք է երևացել. վերին զորության օգնությամբ նրան հայտնի է դարձել ապագան, նա կանխատեսել է այն չարիքները, որ պիտի թափվեն հայերի գլխին։ Սահակը վերարտադրում է տեսիլքը, կրկնում այն մեկնությունը, որ տված է եղել տեսիլքին աստծու հրեշտակը. ահա այստեղից է նրան հայտնի դարձել, որ Արշակունիները զրկվելու են թագավորությունից, իսկ Գրիգոր Լուսավորչի ցեղը՝ քահանայապետությունից։

Տեսիլքները, որպես հատուկ գրական տեսակ, լայն տարածում էին գտել հին մատենագրության մեջ. նրանք հաճախակի պարունակում են պատմական այս կամ այն իրադարձության նախագուշակություններ, այդպիսի մի գրվածք է նաև Սահակի տեսիլքը։ Անկախ նրանից՝ Փարպեցին ինքն է կազմել այն, թե օգտվել կամ վերամշակել է եղած օրինակը՝ «նախագուշակությունն» անկասկած պիտի կազմված լիներ բուն դեպքերից հետո։ Ինչ խոսք, որ համաձայն գրական կանոնների Սահակը՝ ի կատարումն հրեշտակի բացատրած նախագուշակության, հրաժարվում է կրկին անգամ ստանձնել քահանայապետությունը։ Մույն հոռետեսությամբ հագեցված տեսիլքում առկա են նաև հուսատու գաղափարներ՝ կգա ժամանակ, երբ և՛ Արշակունիները, և՛ Գրիգոր Լուսավորչի սերունդները կվերականգնեն իրենց իրավունքները։ Այժմ մենք գիտենք, որ այդ նախագուշակությունը այդպես էլ չարդարացավ։

«Սահակի տեսիլքը» շուտով անջատվեց Ղազար Փարպեցու Պատմությունից ու տարածվեց իբրև առանձին գրվածք, այն թարգմանվել է վրացերեն ու հունարեն (ընդհանրապես հայերենից հունարեն թարգմանվել է միայն մի քանի գրավոր հուշարձան)։ Հայ հասարակական մտքի վրա այդ տեսիլքի քաղաքական գաղափարները մեծ ազդեցություն չեն ունեցել։ Իսկ Բյուզանդիայում այն կատարեց շատ խոշոր դեր. 867—886 թթ. բյուզանդական գահի վրա է բարձրանում Բարսեղ Մակեդոնացին, որի երակներում (գոնե կիսով չափ) հայ արյուն էր հոսում. X դարում նրա թոռը՝ Կոստանդին Ծիրանածինը, ասելով, որ իր պապը հայ է, սերում է հայ Արշակունիներից, պնդում է, որ Բարսեղի գահակալությամբ իրացվում է Սահակ կաթողիկոսի տեսիլքի նախագուշակությունը։ Այդ տեսությունը առաջացել էր Բարսեղի օրով, թոռը միայն վերարտադրում է, մինչ Ցածր խավերից ելած Բարսեղը, որը գահ էր բարձրացել մի շարք զազրելի սպանություններից հետո, շնորհիվ տեսիլքի յուրատեսակ մեկնաբանության, մի հարվածով դառնում է Արշակունի, իսկ նրա գահակալությունը հավանություն է ստանում ի վերուստ։

Կորյունի և նրան հետևող Ղազար Փարպեցու տվյալներից երևում է, որ Սահակը վախճանվել է 439 թ. սեպտեմբերի 7-ին. վեց ամիս հետո, 440 թ. փետրվարի 17-ին վախճանվում է նաև Մաշտոցը, կաթողիկոսական աթոռը գրավում է Հովսեփը՝ Վայոց Ձորի Հողոցիմք գյուղից։ Հայաստանում խաղաղություն է տիրում մինչև պարսից արքա Հազկերտի 12-րդ տարին։ Սրանով ավարտվում է Ղազար Փարպեցու Պատմության առաջին գիրքը։

* * *

Նոր գրականության մեջ տարածված երևույթ է, երբ վեպում ներկայացված է լինում մի ամբողջ դարաշրջան, գործում են բազմաթիվ անձեր, հեղինակն ընթերցողին տանում է ժամանակով առաջ կամ ետ, այս կամ այն կողմ, վերականգնում անցյալը, կանխում ապագան, մինչդեռ բուն գործողությունը տևում է ընդամենը շաբաթներ կամ օրեր։

Այլ է միջնադարյան պատմիչը. նրան ևս հատուկ են մտքի թռիչք, փիլիսոփայական երկար խորհրդածություններ, գործող անձնավորություններ նույնպես պատկառելի թիվ են կազմում, սակայն ժամանակը այստեղ ընթանում է մի ուղղությամբ, հեղինակը խուսափում է զուգահեռ սյուժեներից, երբ զանազան գործողությունները միաժամանակ են տեղի ունենում։ Այդպիսի մոտեցման օրինակ կարող է ծառայել հենց Ղազար Փարպեցին։ Առանց ետ նայելու, հանդարտ քայլերով նա տանում է իր ետևից ընթերցողին, որը անընդհատ լարվածության մեջ է գտնվում։ Հազվադեպ է պատահում, երբ պատմական եղելությունը լիովին հարազատորեն է վերարտադրվում. սովորաբար այն ենթարկվում է գեղարվեստական վերամշակման. հաճախակի ընթերցողը ասես հրավիրվում է թատրոն. բեմի վրա, համաձայն հեղինակի մտահղացման, հերոսները երկար մենախոսություններ են արտասանում, կատարում այն գործողությունները ու շարժումները, որոնք նախատեսված են ողբերգության ընթացքում, բայց ահա հեղինակը իջեցնում է վարագույրը, հանդիսատեսը նորից դառնում է ընթերցող և ուշիմ հետևում պատմիչի շարադրանքին։

Փարպեցու պատմությունը ուսուցողական նպատակ ունի, այն պատկերացարը մի խոստ է. այդ գաղափարն է կանխորոշում ամբողջ գրքի կամ նրա առանձին մասերի կառուցվածքը, ըստ այդմ ընտրվում են նաև գործող անձինք։ Դրանք երեք հիմնական դասի են բաժանվում՝ հայ նախարարներ, հայ հոգևորականներ, պարսիկներ՝ աշխարհիկ իշխանավորներ ու քրմեր։ Պարսիկների դասը միատարր չէ, բայց ինչպես և իրականության մեջ՝ պարսից ազատանին ու քրմությունը մոտ են իրար. գերագույն իշխանությունը պարզապես տարբեր կողմերով է դրսևորվում։ Ինչ վերաբերում է նախարարներին, ապա այստեղ նշմարելի է մեկը մյուսին բացառող երկու խումբ՝ հավատարիմ մնացածներն և ուրացողներն։ Առաջինները աչքի են ընկնում իրենց հնարավոր բոլոր արժանիքներով, իսկ երկրորդները զուրկ են որևէ գրական հատկությունից։ Ճիշտ է, բացասական հերոսը կարող է ապաշխարել իր մեղքերը և անցնել դրականների ենթախումբը, բայց նա այլևս նույն մարդը չէ, անցյալի հետ կապերը խզված են, և նա պիտի դիտվի որպես բոլորովին նոր անձնավորություն։ Արտաքնապես նախարարությունը թվում է միատարր՝ նրանց կապում է հասարակական դիրքը, ազգային պատկանելությունը, սակայն էապես հավատարիմ մնացածները շեշտակի հակադրվում են ուրացողների խմբին։

Ահա այդպիսի ձևով է շարադրել Փարպեցին 449—451 թթ. ապստամբությունը և նրան հաջորդող դեպքերը, որոնք կազմում են Պատմության երկրորդ գրքի («դրվագի») բովանդակությունը։ Այդ անցքերը կազմում են մեր հին պատմության կարևորագույն էջերից մեկը. չհանդուրժելով Սասանյան պետության տնտեսական, քաղաքական ու բարոյական (կրոնական) ճնշումը, հայերը զենքը ձեռքներին դուրս էին եկել պարսից լծի դեմ։ Վարդանանց պատերազմը լավ է ուսումնասիրված, գիտական վերլուծության արդյունքները արձագանք են գտել նաև հանրամատչելի գրականության մեջ, ուստի այս կամ այն չափով ծանոթ են ամենքին։ Իսկ ինչպե՞ս է ներկայացնում պատմական իրականությունը Ղազար Փարպեցին։

Սյունյաց իշխան Վասակի դուստրը ամուսնացած է նույն տոհմի սեպուհ Վարազվաղանի հետ. ամուսինները հաշտ չեն ապրում, Վասակը սպանում է փեսային։ Վարազվաղանը, փախչելով Պարսկաստան, ապաստան է գտնում հազարապետ Միհրներսեհի մոտ, դրադաշտություն է ընդունում, սադրում Միհրներսեհին հայերի դեմ։ Հազարապետը մի մեծ ծրագիր է մշակում, նպատակ ունենալով ողջ Հայաստանը ենթարկել մոգերի օրենքներին՝ այդ դեպքում, ասում է նա, նաև Վիրքն ու Աղվանքը չեն համարձակվի դուրս գալ պարսից արքայի կամքի դեմ։ Հազկերտը՝ պարսից արքան, մի մեծ հրովարտակ է ուղարկում Հայաստան պահանջելով, որ հայերը ուրանան իրենց հավատքը, ընդունեն մոգության օրենքները։ Գրությունը հասնում է Հայոց աշխարհը, զայրույթ առաջացնում, և բազմաթիվ անվանի եպիսկոպոսներ (կաթողիկոսի հետ միասին) ու նախարարներ կտրուկ պատասխան են տալիս։ Զայրացած Հազկերտն

իր մոտ է կանչում նախարարներին։ Տիզբոն են ժամանում 9 հայ նախարար (նրանց թվում են սպարապետ Վարդան Մամիկոնյանը և մարզպան Վասակ Սյունին) և Գուգարքի բդեշխ Աշուշան։ Տիզբոնում նրանց ստիպում են զրադաշտություն ընդունել. երկար ապրումներից հետո նախարարները որոշում են կայացնում առերես ուրանալ իրենց նախնիների հավատքը. այդ քայլից հետո ազատություն են ստանում և վերադառնում Հայաստան. նրանց հետ գալիս են նաև բազմաթիվ մոգեր։ Հանդիպման պահին ծանր տեսարան է տեղի ունենում. հայերը, հրաժարվելով հավատալ, որ նախարարները առերես են ուրացել ճշմարիտ հավատքը, հեռանում են նրանցից. ի վիճակի չլինելով հանդուրժել այս ամենը, Վարդան Մամիկոնյանը որոշում է ընտանիքով տեղափոխվել հույների կողմը։ Նրանց հետևից պատվիրակություն են ուղարկում, ընդ որում նախաձեռնությունը պատկանում է Վասակ Սյունուն. Վարդանին հասցնում են Վասակի կողմից ստորագրված թուղթը. սպարապետը, տեղեկանալով, որ հայերը պատրաստվում են ապստամբության, վերադառնում է։ Մի մեծ ժողով է տեղի ունենում, որին մասնակցում են նախարարները, հոգևորականները, հասարակ ժողովուրդը. միաձայն երդվում են՝ հավատարիմ մնալ իրենց հավատքին և սկսում են կործանել ատրուշանները, որոնք հիմնել էին Հայաստան ժամանած մոգերը։ Վարդան Մամիկոնյանը գլխավորում է շարժումը, օգնություն է խնդրում Աղվանից երկրից. Աղվանքում է տեղի ունենում առաջին մեծ հաղթանակը պարսիկների զորքի դեմ։ Հենց այդ ժամանակ Վասակը բացորոշ կերպով հեռ է կանգնում ապստամբ հայերից, իր կողմը քաշելով մի շարք նախարարների։ Վարդանը, իմանալով մարզպանի ուրացությունը, անմիջապես վերադառնում է Հայաստան։ Պարսից մեծ զորք է շարժվում դեպի Հայոց աշխարհը. Վարդանը և իր կողմնակիցները պատրաստվում են մարտի. Ճակատամարտի նախօրեի գիշերը Ղևոնդ Երեցն ու սպարապետը խրախուսում են զինվորներին, որպեսզի չնահանջեն թշնամու առջև։ Արևածագին երկու կողմերն էլ պատրաստ էին մարտի. Վարդանը բաժանել էր զորքը 3 մասի՝ ղեկավարությունը հանձնելով առավել փորձված ու անվանի իշխաններին։ Սկսվում է ճակատամարտը. հայերի մի մասը, այն, որ մարտիրոսություն էր ցանկանում, մնում է պատերազմի դաշտում. մյուսները հուսալքված նահանջի են մատնվում. պարսիկները, հետապնդելով կոտորում են նրանց։ Ըստ Փարպեցու հաշվումների՝ այդ օրը նահատակվեցին ընդամենը 1036 հոգի և «նրանց անունները գրված պահվում են կենաց գրքում». պարսիկների կորուստը կազմեց 3544 հոգի։

Երբ պարսից զորավար Մուշկան Նյուսալավուրտը հայտնում է արքային հաղթանակի մասին՝ Հազկերտը սգի մեջ է ընկնում, ողբում է Վարդան Մամիկոնյանի պես մարդու մահը։ Մուշկան Նյուսալավուրտին ետ են կանչում արքունիք, իսկ Հայաստանի մարզպան նշանակում Ատրորմիզդ Արշականուն։ Ատրորմիզդը նամակներ է ուղարկում, կոչելով հայերին վերադառնալ իրենց տները՝ այլևս ոչ ոք չի արգելի նրանց հետևել իրենց հավատքին։ Մինչդեռ Վահանի եղբայր Հմայակ Մամիկոնյանը գնացել էր Հունաց կողմը՝ օգնություն խնդրելու, սակայն օգնություն չի ստանում, վերադառնում է Տայք, նրա շուրջն են համախմբվում կենդանի մնացած մարտիկները. Ատրորմիզդը զորք է ուղարկում նրանց դեմ, Հմայակը իր ընկերների հետ նահատակի մահ է ընդունում, շատ կորուստներ են տալիս նաև պարսիկները։ Պարսից արքունիք է կանչվում նախարարների մի մեծ խումբ՝ նրանց հետ է Վասակ Սյունին (որը, ինչպես պարզվում է, թագավոր դառնալու ակնկալություններ է ունեցել), Պարսկաստան են բերում նաև անվանի հոգևորականների։ Սկսվում է երկար քննություն. Հայերը՝ արժանապատվությունը պահելով, պաշտպանում են իրենց գիծը. Վասակի ուրանալը չի փրկում նրան, նա պատժվում է և վախճանվում Պարսկաստանում։ Քուշանների դեմ դուրս եկած Հազկերտը պարտություն է կրում. Միհրներսեհ հազարապետը բացատրում է արքային, որ մեղքը կալանավորված հայ քահանաներինն է, նրանց հարկավոր է պատժել։ Մարտիրոսական մահ են ընդունում Բասենի եպիսկոպոս Թաթիկը, ապա Հովսեփ կաթողիկոսը, Ղևոնդ Երեցը և նրանց ընկերները։ Անանուն մի եթովպացի (խուժիկ) դավանում

է սրբերի ոսկորները և հասցնում Հայաստան։ Աքսորում անասելի տառապանքներ են կրում Խորեն երեցը և Աբրահամը. Խորենը վախճանվում է Ասորիքում, իսկ Աբրահամին վիճակվում է վերադառնալ հայրենիք[4]։

Ինչ խոսք, որ Վարդանանց պատերազմը ավելի բարդ ու հակասական ընթացք է ունեցել, քան այն նկարագրում է մեր պատմիչը։ Դժվար թե Սյունյաց Վասակի դստեր ու նրա ամուսնու միջև ծագած թշնամությունը կատարեր այն դերը, որը նրան է վերագրում հեղինակը, այն է՝ ճգնաժամային վիճակ ստեղծել հայ-պարսկական հարաբերությունների ոլորտում։ Վարդանանց ապստամբությունը նկարագրել է նաև Եղիշեն։ Համեմատելով Փարպեցու և Եղիշեի շարադրանքը, տեսնում ենք, որ երկուսի մոտ էլ կան բացեր, ընդ որում հաճախակի դժվար է վստահորեն ասել, թե որ սկզբնաղբյուրն է այս կամ այն հարցում ավելի հավաստի։ Այսպես թե այնպես, ժամանակակից պատմաբանը ի վիճակի է Ղազարի պատմությունից քաղել անչափ հարուստ նյութ և այդ երկի օգնությամբ վերականգնել, գոնե իր գլխավոր սաղմերով, պատմական իրականությունը. գրականագետը, իր տեսանկյունից վերլուծելով Պատմությունը, ըստ արժանվույն կգնահատի նրա գեղարվեստական հատկությունները։ Բոլոր դեպքերում գրավոր հուշարձանը ենթակա է քննական մոտեցման, որի շնորհիվ էլ մենք կարող ենք գտնել դրա իսկական (տվյալ դեպքում՝ ավելի քան բարձր) տեղը մեր հին մատենագրության գանձարանում։

Ճիշտ նույն եղանակով գրված է Պատմության նաև վերջին՝ երրորդ դրվագը։ Ինչպես ասացինք, այն նվիրված է հիմնականում 482—484 թթ. ապստամբությանը։ Այստեղ Փարպեցու աշխատությունը ոչ միայն գլխավոր, այլև փաստորեն միակ սկզբնաղբյուրն է։ Այժմ, երբ մենք գիտենք, թե ինչ եղանակով է շարադրում Ղազար Փարպեցին պատմական անցքերը, փորձենք վերաշարադրել դրանք ժամանակակից գիտության եղանակով։

«Վարդանանց» ապստամբության ճնշումից հետո Հայաստանում ստեղծվել էր ծանր կացություն։ Ավարայրի դաշտում մնաց 1036 հոգի (վիրավորների վրա այդ հաշիվը չի տարածվում)։ Գերիների մի մեծ խումբ տարվել էր Պարսկաստան. հոգևորականությունը, սակավ բացառությամբ, մարտիրոսական մահ ընդունեց, իսկ աշխարհիկ տերերը աքսորվեցին. նրանք վերադարձան հայրենիք միայն 462 թ.։ Երկրում վիճակը խառն էր։ Ինքնավարության իրավունքները, որ հայերը կարողացել էին ապահովել Արշակունյաց անկումից հետո, համարյա վերացել էին։ Ճիշտ է, հազարապետի պաշտոնը պարսիկները խլել էին դեռևս Ավարայրից առաջ, 449 թ. (Վահան Ամատունու փոխարեն մի գրադաշտական էր ստանձնել այդ տիտղոսը), սակայն միայն ապստամբությունից հետո մարզպան ևս նշանակվեց գրադաշտական՝ Ատրորմիզդ անունով. դրանից առաջ այդ պաշտոնը վարում էր հայ իշխան Վասակ Սյունին։ Թեև նա ամեն կերպ ձգտում էր հետ պահել Վարդան Մամիկոնյանին ու նրա զորակիցներին վճռական քայլերից, Վասակը հայ նախարար էր և կոչված էր ներկայացնելու հայերի շահերը պարսից դրան առջև (մարզպանությունը վերադարձավ հայերին միայն 485 թ.)։ Դժվար է հստակ կարծիք կազմել սպարապետության ճակատագրի նկատմամբ։ Ականավոր պատմիչ Ստեփանոս Տարոնացի Ասողիկը, որն ավարտել է իր «Տիեզերական պատմությունը» 1004 թ., այսինքն դեպքերից հինգ ու կես հարյուրամյակ անց, ասում է, որ Վարդանի մահից հետո Հայոց երկիրը 10 տարի անիշխան էր մնացել և այդ շրջանում «հալածանք ու խռովութիւնք բազմանային»։ Հազկերտի հաջորդ Պերոզ արքայից արքան, հայրենիք արձակելով գերի նախարարներին, սպարապետությունը հանձնում է Վարդանի որդի Մանդնոս Մամիկոնյանին։ Պատմիչի ասելով, վերջինս վարում է այդ պաշտոնը 20 տարի։ Այստեղ ոչ միայն հաշիվն է անհնարին, այլև փաստը ինքնին կասկածելի է։ Ով է այդ «Մանդնոսը» (լատիներեն Magnus «մեծ» բառից, այլուր այդ անունը չի հանդիպում), որի մասին ոչ մի հիշատակություն չեն պահպանել ո՛չ Եղիշեն, ո՛չ էլ Ղազար Փար-

[4] Այր Աբրահամին է հիշում, հավանաբար, իր Թղթում Ղազար Փարպեցին։

պեցին։ Բայց մեզ համար էականն այն է, որ ինչպես էլ լուծելու լինենք այդ հարցը՝ Երկրորդ ապստամբությունից առաջ սպարապետ է եղել Վահան Մամիկոնյանը։

Ավարայրից հետո պարսիկները հրաժարվեցին ողջ հայությունը զրադաշտական դարձնելու իրենց նպատակից։ Բռնի կրոնափոխության դեպքեր քիչ են եղել։ Սակայն նախարարության մի մասը քիչ թե շատ կամավոր կերպով անցել էր մազդեզանց հավատքին՝ ցուցադրելով դրանով իր պարսկամետությունը։ Հայաստանում, ինչպես նաև հարևան Վիրքում ու Աղվանքում, ձևավորվել էր քաղաքական մի ուժ, որը հենարան էր ծառայում պարսից արքունիքին կիսանվաճված այդ երկրներում։ Դրսևորելով իրենց հավատարմությունը, նախարարները ստանում էին պարսից իշխանությունից և՛ արտոնություններ, և՛ նյութական բարիքներ։ Եվ գործնական միտքը, կշռելով բոլոր թեր ու դեմերը, հանգիստ խղճով Քրիստոսին փոխանակում էր Միհրով։ Իհարկե, այդ կատարվում էր ուղղակի կամ անուղղակի ճնշման ներքո, բայց ճնշումը տարածված էր բոլորի վրա, իսկ նահանջում էին միայն անհատները։

Շատ դեպքերում այդպիսի վարմունքը եղել է ոչ թե թուլամորթ շահամոլների, այլ իմաստուն քաղաքագետի մտածված քայլ։ Այդպես պիտի հասկանալ նաև Վահան Մամիկոնյանի վարմունքը։ Տիզբոն գնալով Վահանը, ինչպես վկայում է Ղազար Փարպեցին, «տկարանայ ի հաւատն»։ Ըստ երևույթին, ճիշտ այնպես, ինչպես 450 թ. Վարդան Մամիկոնյանը, Վասակ Սյունին և մյուս նախարարները՝ Վահանը ևս ստիպված է եղել առերես ուրանալ քրիստոնեությունը։ «Վասն վասս անուն ուրացութեանն, զոր նման նահատակեալ հարցն իւրոց պատճառանօք և ոչ ճշմարտութեամբ կրէր յինքեան»։ Վահանը միշտ անհանգիստ էր. երկար ժամանակ նա տառապել է «յաղագս մոգութեան անուան». «որպէս վտանգեալ տագնապիմ յամենայն ժամու յաղագս սուտ անուանս, զոր առելութեամբ կրիմ յանձին իմում», ասում է ինքը սպարապետը. ապստամբությունը չսկսված՝ նա վերադառնում է իր հին հավատքին։ Ինչպես էլ որ գնահատելու լինենք ուրացությունը, բոլոր դեպքերում այն նպաստում էր, թեկուզ և ժամանակավորապես, պարսից իշխանության ամրապնդմանը։

Տագնապալից էր հայոց եկեղեցու վիճակը։ Ավարայրի մարտից հետո Հովսեփ Վայոցձորեցի կաթողիկոսը տարվել էր Պարսկաստան ու այնտեղ ավարտել իր կյանքը որպես մարտիրոս։ Հովսեփի հաջորդներից էր Գյուտը. սրա օրոք մայր աթոռը Վաղարշապատից տեղափոխվում է Հայաստանի վարչական կենտրոն դարձած Դվին։ Գյուտը ձգտում է մազդեզանց հավատքի առաջն առնել, բանակցություններ է վարում բյուզանդական Լևոն կայսեր հետ։ Գաղիշո խորխոռունի նախարարը ամբաստանում է նրան, կաթողիկոսին կանչում են Պարսկաստան ու զրկում հովվապետի իշխանությունից. Գյուտը քաշվում է Վանանդ, այնտեղ էլ վախճանվում։ Այդ տարիներին կաթողիկոսական աթոռը իրապես թափուր է եղել։ Գյուտի հաջորդն էր Հովհան Մանդակունին։ Ճիշտ այնպես, ինչպես ժամանակին Հովսեփ Վայոցձորեցին, նա հարում է ապստամբությանը. լինելով Վահան Մամիկոնյանի մտերիմը, նա մասնակցում է պատերազմական գործողություններին, իսկ Խոսրովակերտի ճակատամարտում ձիուց վայր ընկնում ու վիրավորվում։ Ղազար Փարպեցին ջերմ խոսքեր է ուղղում Հովհան Մանդակունու հասցեին, իսկ Պատմությունը ավարտում նրա պերճաբան բարբառով։

Պարսիկները խախտում էին նախարարների ավատական իրավունքները, քայքայում նրանց տնտեսապես, իսկ ամենից ծանր լուծը ընկել էր ռամիկ-շինականների վրա։ Ստորին խավն էր, որ պիտի ապահովեր նախարարական տնտեսությունը, վերջին հաշվով՝ նաև եկեղեցու բարեկեցությունը։ Ռամիկ-շինականների մասնակցությունը մեծ թափ հաղորդեց Վարդան Մամիկոնյանի ապստամբությանը, այժմ նրանք պատրաստվում էին նորից հանդես գալ՝ զենքը ձեռքին։

«Վարդանանց» ապստամբությունը՝ հակառակ նրան, որ պատրաստությունները վաղուց էին տեսել՝ սկսվեց մասնակի միջադեպից։ Հայաստան ներխուժած

պարսիկները կիրակի օրը փորձեցին ջարդել եկեղեցու դուռը. տեղում գտնվող Ղևոնդ Երեցը խիզախ դիմադրություն կազմակերպեց, մոգերին ու մոգպետին ցրեցին, և դա բավական եղավ, որ ամբոխը դիմի զենքի։ Իսկ Վահանի օրոք ազդակը եկավ Գուգարքից. դա մի տիրույթ էր, որը ժամանակին գտնվում էր «Մեծ Հայքի» կազմում, իսկ այժմ վեր էր ածվել Վիրքում պարսից գերագույն իշխանության հենարանի։ Վարդանի ժամանակակից՝ Գուգարքի բդեշխ Աշուշան (որն ի պաշտոնե պիտի ապահովեր Արևելյան Վրաստանի հավատարմությունը պարսից արքունիքին) 450—451 թթ. զգուշավոր դիրք էր ընդունել, թեև համակրանքն, անշուշտ, ապստամբների կողմն էր. ինչպես ասվեց վերևում, նրա տանն էին ապաստան գտել Մամիկոնյան տոհմի անդամները։ Իսկ Աշուշայի որդի Վազգեն-Վարսկենը, բացարձակ «ուրացող» լինելով, սպանեց իր քրիստոնյա տիկնոջը, Վարդան Մամիկոնյանի դուստր Շուշանիկին. Շուշանիկը ոչ մի կերպ չէր համաձայնում քրիստոնեությունից անցնել մազդեզանց կրոնին։ Եվ ահա 482 թ. վրաց Վախթանգ Գորգասալ թագավորը սպանում է բդեշխին։ Այդ քայլը պիտի միանշան մեկնաբանվեր՝ վրաց թագավորը բարձրացրել է ապստամբության դրոշը, նա ուզում է թոթափել պարսից գերագույն իշխանությունը ու տեսնել իր երկիրը անկախ։ Վախթանգը հույս ուներ շարժման մասնակից դարձնել Կովկասում բնակվող հոներին, բայց իրականում նրա կողմնակիցները պիտի լինեին հայերը։ Այդ դեպքերից ինչ-որ ժամանակ առաջ Վահան Մամիկոնյանին կանչել էին Տիզբոն՝ ոմն ասորի Վրիվը ամբաստանել էր նրան պնդելով, որ սպարապետը ապստամբության ծրագրեր է մշակում։ Վահանը իր հետ բերել էր ոսկի, «ուրացել» էր իր հավատքը և այդ գնով արդարացել ու ներում ստացել։ Բայց արդյո՞ք նա արդեն այն ժամանակ չէր մտածում վճռական քայլերի մասին. համենայն դեպս, երբ Վախթանգը դիմեց հայերին, ապա Վահանը, կարճատև տատանումներից հետո, միացավ ապստամբ թագավորին։ Ահա այսպես սկսվեց Վահան Մամիկոնյանի ղեկավարած ազատագրական շարժումը, որը տևեց մոտ 2 տարի և պսակվեց մեծ հաջողությամբ[5]։

Առաջին բախումը տեղի է ունենում 482 թ., Շիրակի Անի ամրոցի մոտ. դիմանալով հայերի գրոհին, պարսիկները փախչում են Արտաշատի ուղղությամբ. լքելով այստեղ իր զինվորներին, Ատրվշնասպ մարզպանը գաղտնի գնում է Ատրպատական, որպեսզի իր հետ նոր ուժեր բերի, և ահա պարսից զորքը մոտենում է Երասխ գետին։ Ապստամբները համաձայնության են գալիս, որ երկրի կառավարիչը լինի ասպետ Սահակ Բագրատունին, իսկ գերագույն հրամանատարը՝ Վահան Մամիկոնյանը. առաջինը ընտրվում է մարզպան, իսկ երկրորդը՝ հաստատվում որպես սպարապետ։ Այդ նույն 482 թ. Վահանին հաջողվում է ջարդել պարսիկներին Ակոռի ավանի մոտ՝ Մասիսի հյուսիսային լանջերին։ Այդ ճակատամարտում իր մահը գտավ նաև պարսիկ մարզպանը։ 483 թ. գարնանը Վահանը մի նոր հաղթանակ է տանում Ներսեհապատ գյուղի մոտ, Ավարայրից ոչ հեռու. մեծ ջարդ կրելով, պարսիկները դիմում են փախուստի։

Սակայն ուժերի ընդհանուր անհավասարությունը ակներև էր։ Արդեն Ներսեհապատի հաղթանակից հետո վրաց Վախթանգ թագավորը օգնության է կանչում հայերին, բայց երբ հայ-վրացական ջոկատները Կուր գետի մոտ սկսեցին մարտը պարսից ուժերի դեմ, բախտը դավաճանեց նրանց. պարտություն կրելով՝ Վահան Մամիկոնյանը ստիպված եղավ հեռանալ դեպի Տայք, իսկ վրաց թագավորը ապաստան գտավ Լազիստանում։ Այս կռվում է, որ զոհվեց մարզպան Սահակ Բագրատունին։

Պատերազմական գործողությունները տևեցին ամբողջ 483 թ., անորոշ արդյունքներով. պարսիկները այդպես էլ չկարողացան հաղթել Վահանին, բայց սպարապետն էլ ուժ չուներ թշնամուն երկրից դուրս շպրտելու համար։ Այսպ-

---

5 Հայագիտական գրականության մեջ նշվում է, որ Վահան Մամիկոնյանի ապստամբությունը սկսվել է 481 թ.։ Դա թյուրիմացություն է. ապստամբությունը սկսվել է բդեշխի սպանությունից հետո, որը տեղի է ունեցել Պերոզ պարսից արքայի 25-րդ տարում, այն է՝ 482 թ.։

տամրները ձմեռը անց էին կացրել «ոստանում»՝ Դվինում։ Իսկ երբ գարունը մոտեցավ, Հայաստան ներխուժեց մի մեծ բանակ՝ Զարմիհր Հազարավուխտի գլխավորությամբ։ Վահանի ուժը փոքր է եղել, հայ զոկատների մի մասը գնացել էր Վիրք։ Այնուամենայնիվ, անգամ իր փոքր ուժերով, Վահանը կարողացել էր մի քանի ամիս դիմադրել պարսիկներին։ Զարմիհրին փոխարինում է Շապուհ մարզպանը. սրան էլ չի հաջողվում ճնշել ապստամբությունը. Վահանը մեծ արագությամբ տեղից տեղ է փախչում և ճիշտ ընտրելով ժամանակը՝ հարվածներ հասցնում թշնամուն։ Եվ այն պահին, երբ երկու կողմերն էլ պատրաստվում էին շարունակել մահու կռիվը, Պարսկաստանից լուր է հասնում, որ արևելքում բնակվող հեփթաղների դեմ կռվում սպանվել է արքայից արքա Պերոզը։

Դրությունը հանկարծակի հիմնովին փոխվում է. եթե առաջ էլ, Պերոզի օրոք, պարսիկներին չէր հաջողվում նվաճել Հայոց երկիրը, ապա այժմ, երբ նրանք այդպիսի պարտություն էին կրել հեփթաղներից, անիմաստ էր շարունակել պատերազմը Հայաստանում։ Արտասովոր վիճակ է ստեղծվում. ապըստամբ սպարապետ Վահան Մամիկոնյանը ինքն է թելադրում հաշտության պայմանները։ Նվարսակում բանակցությունների ժամանակ Վահանը պահանջում է՝ ա) պարսիկները թողնում են հայերին նրանց «հայրենի և բնիկ օրենքները», այսինքն քրիստոնեությունը, իսկ կրակարանները վերացվում են. բ) պարսիկները իրավունք չունեն որոշելու որն է տոհմիկ, և որը՝ ոչ, այսինքն այլևս չեն խախտում դարերի պատմություն ունեցող նախարարական կարգը. գ) թագավորը անձամբ ինքն է որոշելու հայերի գործերը, այսինքն վեճի դեպքում հնարավորություն է ստացվում անմիջապես դիմելու նրան, շրջանցելով մարզպանին։

Ղազար Փարպեցու հետագա շարադրանքից գիտենք, որ այդ պայմանները ամբողջությամբ ընդունվեցին։ Դա կատարյալ հաղթանակ էր այն ժամանակ, երբ լիակատար անկախությունը դարձել էր անհնարին։ Վահանին հաջողվեց լրիվ վերականգնել հայերի ինքնավարությունը պարսից գերագույն իշխանության ներքո, ապահովել քրիստոնեությունը, դրանով հնարավորություն ստեղծելով ապագայի մշակույթի ազատ զարգացման։ Համաձայնությունը ստորագրված էր 484 թ., իսկ հաջորդ՝ 485 թ. սպարապետ Վահան Մամիկոնյանը նշանակվեց Հայոց մարզպան. այնուհետև հայերի ու պարսից արքունիքի միջնորդը ոչ թե Պարսկաստանից նշանակված աստիճանավոր էր, այլ տեղացի իշխանը, որ մեծ հեղինակություն էր վայելում՝ երկամյա պատերազմում տարած հաղթանակների համար։ 482—484 թթ. ապստամբության ամենից կարևոր հետևանքը թերևս դա է եղել։

Նվարսակի դաշնագրությունը հիմք ծառայեց հայոց ինքնավարությանը ընդհուպ մինչև սասանյան իշխանության վերացումը VII դարի 40-ական թվականներին։

## ЛАЗАР ПАРПЕЦИ

*Доктор ист. наук К. Н. ЮЗБАШЯН (Ленинград)*

(Резюме)

В статье предпринята попытка создать литературный портрет армянского автора конца V в. Лазара Парпеци, выявить литературные достоинства его Послания Вагану Мамиконяну и Армянской истории, дать оценку этим важнейшим источникам для изучения армянской истории и культуры конца IV—V вв.